Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 4 ՓԵՏՐՎԱՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*



# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ 1956 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Ա. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

*Հունվարի 23—24-ը Երևանում տեղի ունեցած Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Երկրորդ սեսիան քննարկեց և հաստատեց ռեսպուբլիկայի 1956 թվականի՝ վեցերորդ հնգամյակի առաջին տարվա Պետական բյուջեն։ Բյուջեի թվերի մեջ վառ կերպով արտացոլված են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության իմաստուն ազգային քաղաքականությունը, նրանց անսահման հոգատարությամբ ՍՍՌՄ ազգային ռեսպուբլիկաների էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա զարգացման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման նկատմամբ։*

*Սովետական ժողովուրդը հայրենասիրական մեծ խանդավառությամբ դիմավորեց վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ 20-րդ համագումարի Դիրեկտիվների*

նախագիծը։ Դա մեր սոցիալիստական Հայրենիքի տնտեսության և կուլտուրայի ծաղկման, նրա տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման հոյակապ ծրագիրն է։ Վեցերորդ հնգամյա պլանի իրականացումը նոր առաջընթաց խոշոր քայլ կլինի մեր երկրում կոմունիստական հասարակարգ կառուցելու ճանապարհին։

Հնգամյա պլանի վերաբերյալ Դիրեկտիվների նախագծով խոշոր միջոցառումներ են նախատեսվում միութենական ռեսպուբլիկաների, այդ թվում նաև մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման համար։ Բավական է նշել, որ հնգամյակի ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացվում է մոտավորապես 1,7 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ մոտավորապես 1,3 անգամ, հանքային պարարտանյութերի արտադրությունը՝ 1,6 անգամ, ցեմենտինը՝ 2 անգամ, խաղողի գինուն՝ 1,4 անգամ, կաշվե կոշկեղենինը՝ 1,5 անգամ։ Հնգամյակում ավարտվելու է Սևան-Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը, սկսվելու է նոր հիդրոէլեկտրակայանների կառուցումը։ Կա-



ռուցվելու են տասնյակ նոր գործարաններ ու ֆաբրիկաներ։ Գյուղատնտեսության բնագավառում նախատեսվում է 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունը ավելացնել մոտավորապես 1,5 անգամ, միսինը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, բրդինը՝ 1,8 անգամ, բոժոժինը՝ 1,8 անգամ։

Ռեսպուբլիկայի 1956 թվականի Պետական բյուջեն լրիվին ապահովում է վեցերորդ հնգամյակի առաջին տարվա տնտեսական և կուլտուրական հսկայական շինարարության ֆինանսավորումը։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի սեսիան 1956 թվականի Պետական բյուջեն հաստատեց եկամուտների գծով՝ 1 միլիարդ 335 միլիոն 699 հազար ռուբլի գումարով, ծախսերի գծով՝ 1 միլիարդ 335 միլիոն 60 հազար ռուբլի գումարով։ Այսպիսով, բյուջեի եկամուտները ծախսերի նկատմամբ գերազանցում են 639 հազար ռուբլով։

Անցյալ տարվա համեմատությամբ զգալիորեն ավելացվել են ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության ֆինանսավորման համար նախատեսված գումարները։ Արդյունաբերության, շինարարական ինդուստրիայի, թեթև և սննդի արդյունաբերության,

գյուղատնտեսության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետագա զարգացման համար Պետական բյուջեով ծախսերը սահմանված է 340 միլիոն 54 հազար ռուբլի և բացի դրանից, ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցների հաշվին՝ 285 միլիոն 815 հազար ռուբլի, ընդամենը 625 միլիոն 869 հազար ռուբլի, որը անցյալ տարվա համար սահմանված գումարը գերազանցում է մոտավորապես 83 միլիոն ռուբլով։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացումը, գիտության, կուլտուրայի, ժողովրդի առողջապահության և ժողովրդական կրթության գործի հետագա զարգացումը միշտ էլ հանդիսացել և հանդիսանում է Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ամենաչերմ հոգատարության առարկան։ Այդ հոգատարությունը իր արտահայտությունն է գտել սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորման համար բյուջեում նախատեսված հսկայական գումարների մեջ։ Ռեսպուբլիկայի Պետական բյուջեով սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար հատկա-



ցումները սահմանված է 883 միլիոն 523 հազար ռուբլի, որը կազմում է ամբողջ բյուջեի 66 տոկոսը և անցյալ տարվա համար հատկացված գումարը գերազանցում է ավելի քան 75 միլիոն ռուբլով։

Այդ գումարից ընդհանուր ուսուցման ու ֆաբզործուսի դպրոցների, տեխնիկումների, բուհերի, գիտահետազոտական հիմնարկների, գրադարանների, ակումբների, թատրոնների, մամուլի և լուսավորության ու կուլտուրայի գծով այլ միջոցառումների համար հատկացվում է 565 միլիոն 353 հազար ռուբլի։ 233 միլիոն 627 հազար ռուբլի հատկացվում է հիվանդանոցների, մանկամսուրների, սանատորիաների, ծննդատների և բնակչությանը բժշկական օգնություն ցույց տվող այլ հիմնարկությունների, ֆիզկուլտուրայի և սպորտային միջոցառումների համար։ Զգալիորեն ավելացվել է նաև պատերազմի և աշխատանքի հաշմանդամների ու նրանց ընտանիքների կենսաթոշակների և նպաստների, հաշմանդամների տների պահպանության, ժամանակավոր անաշխատունակության դեպքում բանվորներին ու ծառայողներին տրվող նպաստների համար հատկացվող գումարները։ Այդ նպատակի

համար բյուջեում նախատեսված է 84 միլիոն 543 հազար ռուբլի։

Ի հակադրություն կապիտալիստական աշխարհի, որտեղ բյուջեի եկամուտները ծանր բեռի պես ընկած են աշխատավորների ուսերին, սոցիալիզմի երկրում բյուջեի եկամուտների գերակշռող մասը գոյանում է պետական և կոոպերատիվ ձեռնարկություններից ստացվող եկամուտներից, շրջանառության հարկերից ու օգուտներից կատարվող մասհանումներից։ Մեր ռեսպուբլիկայի Պետական բյուջեով նախատեսված 1 միլիարդ 335 միլիոն 699 հազար ռուբլի եկամուտներից 1 միլիարդ 61 միլիոն ռուբլին կուտակվելու է հենց այդ աղբյուրներից։ Հասկանալի է, թե ինչպիսի պատասխանատվություն է ընկնում մեր պետական ու կոոպերատիվ ձեռնարկությունների և առևտրական կազմակերպությունների վրա։ Բյուջեի եկամուտները լրիվ ապահովելու համար անհրաժեշտ է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ձեռնարկություն սիստեմատիկորեն կատարի արտադրական առաջադրանքները, անընդհատ բարձրացնի աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը, իջեցնի ինքնարժեքը, վերացնի անարտադրողական ծախսերը։



Համաժողովրդական այդ խնդիրների լուծման համար մղվող պայքարում մեծ է մեր ագիտատորների դերը։ Նրանց խնդիրն է՝ մասսաների մեջ ագիտացիոն աշխատանքի ընթացքում հնգամյա պլանի վերաբերյալ Դիրեկտիվների նախագծում, ՀԿՊ 18-րդ համագումարի որոշումներում, ՍՍՌՄ Գերագույն Սովետի և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի սեսիաների որոշումներում առաջադրված խնդիրները սերտորեն շաղկապել յուրաքանչյուր ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի, ՄՏԿ-ի կոնկրետ խնդիրների հետ, աշխատավորների ուշադրությունը բևեռել աշխատանքի թերությունների վերացման վրա, արդյունաբերության տեխնիկական պրոգրեսի, աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորների փորձը լայնորեն կիրառելու վրա։

Ագիտատորների պատվի խնդիրն է՝ մարտական, նպատակասլաց ագիտացիայով բարձրացնել մասսաների արտադրական, քաղաքական ակտիվությունը, ստեղծագործական նախաձեռնությունը, ծավալել համաժողովրդական սոցիալիստական մրցությունը վեցերորդ հնգամյակի առաջին տարվա հոյակապ խնդիրները հաջողությամբ կենսագործելու համար։

---

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

## (Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 38-րդ տարեդարձի առթիվ)

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

*Սովետական ժողովուրդը, նրա հետ միասին ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորներն ու ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը փետրվարի 23-ին տոնելու են Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 38-րդ տարեդարձը։*

*Այդ համաժողովրդական տոնը մեր երկրի աշխատավորները այս տարի նշում են քաղաքական ու արտադրական բարձր ակտիվության պայմաններում։*

*Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները հաջողությամբ կատարելով հինգերորդ հնգամյա պլանը, սնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում ձեռք բերած լավագույն ցուցանիշներով են գնում դեպի*



*ՍՄԿՊ XX համագումարը, որի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ բանվորներն ու կոլտնտեսականները նորանոր սխրագործություններ են կատարում։*

*Սովետական մարդիկ հայրենասիրական բուռն խանդավառությամբ ընդունեցին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյակի վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների նախագիծը, որի իրականացումը նոր խոշոր քայլ կլինի կոմունիզմի կառուցման գործում։*

*Նոր հնգամյակի Դիրեկտիվների նախագծում խոշոր միջոցառումներ են նախատեսվում միութենական բոլոր ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսության հետագա զարգացման և արտադրողական ուժերի ճիշտ տեղաբաշխման ուղղությամբ։ Մեր ռեսպուբլիկայում նախատեսվում է վեցերորդ հնգամյակում ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացնել մոտավորապես 1,7 անգամ, այդ թվում ռեսպուբլիկական արդյունաբերությունը՝ 1,6 անգամ։ Առանձնահատուկ զարգացում են ստանալու մեքենաշինությունը, հաստոցաշինությունը, գործիքաշինությունը և էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։*

խոշոր աշխատանք պետք է կատարվի ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառում։ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունն ավելացվելու է մոտավորապես 1,5 անգամ, բանջարեղենինը՝ 2,4 անգամ, մսինը 2,1 անգամ, կաթինը 2,2 անգամ։ Ոռոգելի հողերի տարածությունն ընդարձակվելու է 39 հազար հեկտարով, ջրովի են դարձվելու 150 հազար հեկտար արոտավայրեր։

Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի օրը, մեր երկրի աշխատավորության հետ միասին, քաղաքական և մարտական պատրաստականության բարձր ցուցանիշներով են տոնում նաև սովետական ռազմիկները, որոնք իրենց բոլոր ջանքերը գործադրում են հիմնովին տիրապետելու ժամանակակից ու ավելի կատարյալ մարտական տեխնիկային, զգոն կերպով պահպանել մեր Հայրենիքի անվտանգության շահերը։



Սովետական Բանակը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն է։ Նրա կազմակերպիչն ու ղեկավարը մեծ Լենինի ստեղծած Կոմունիստական պար-



տիան է, որը մեր զինված ուժերին միշտ գոտեմարտի է ոգեշնչել սոցիալիստական Հայրենիքի ոխերիմ թշնամիների դեմ և ապահովել հաղթանակը մարտի դաշտում։

Ամեն անգամ, երբ իմպերիալիստական գիշատիչները փորձել են ոտնձգություններ կատարել Մեծ Հոկտեմբերի նվաճումների դեմ, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության առաջին իսկ կոչով մեր հերոսական բանակը լրիվ մարտական վիճակում կանգնել է դուրս եկել օտարերկրյա զավթիչների դեմ և պատվով կատարել իր պարտքը Հայրենիքի հանդեպ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը և աշխարհում առաջին Սովետական պետության ստեղծումը առաջ բերեց բոլոր երկրների, առաջին հերթին ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն ուժերի ատելությունը ընդդեմ երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի թշնամիները արշավելով Սովետական Ռուսաստանի վրա, իրենց բոլոր ջանքերը գործադրում էին ոչընչացնելու բանվորների ու գյուղացիների ձեռք բերած նվաճումները։

Մեր հայրենիքն առնված էր կրակե օղակի մեջ։ Ռևոլյուցիայի թշնամիների գրոհները

կասեցնելու, նրանց ջախջախելու համար նորաստեղծ սոցիալիստական պետության համար անհրաժեշտ էր ունենալ սեփական, աշխատավորների շահերին անհունորեն նվիրված, բարձր կարգապահություն ունեցող բանակ։ Այդ նպատակով էլ Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ Վ. Ի. Լենինի ստորագրությամբ 1918 թվականի հունվարի 28-ին հրապարակվեց դեկրետ՝ Բանվորագյուղացիական Կարմիր Բանակ կազմակերպելու մասին, իսկ փետրվարի 14-ին՝ Ռազմա-Ծովային Նավատորմ կազմակերպելու մասին։

Վ. Ի. Լենինը, Կոմունիստական պարտիան կազմակերպելով Կարմիր Բանակն ու նրան ոգեշնչելով մարտի թշնամու դեմ, հավատով էին լցնում սովետական մարդկանց սրտերը հաղթանակի նկատմամբ։

Իր գոյության առաջին իսկ օրերից, իմպերիալիստական զավթիչների դեմ մղած մարտերում Կարմիր Բանակը ցույց տվեց արիության ու խիզախության, Հայրենիքին անհունորեն նվիրվածության լավագույն օրինակ։ Թվով ոչ շատ, բայց ռևոլյուցիոն ոգով ուժեղ Սովետական Զինված Ուժերի զորագնդերը Պսկովի և Նարվայի տակ ջախջախիչ հարված հասցրին գերմանական իմպեր-



վենտների «փառաբանված» դիվիզիաներին ու կասեցրին հակառակորդի առաջխաղացումը դեպի երկրի խորքը։ Այդ 1918 թվականի փետրվարի 23-ն էր։ Դրա համար էլ այդ օրը Սովետական Բանակի տարեգրության մեջ մտավ որպես նրա ծննդյան օր և ամեն տարի նշվում է ինչպես համաժողովրդական տոն։

Ստեղծվելով քաղաքացիական պատերազմի կրակի ու բոցերի մեջ, թշնամու դեմ մղած ահեղ ճակատամարտերում մեր Հայրենիքի Զինված Ուժերը գնալով աճեցին և հզոր ուժ դարձան։ Մեծ Լենինի գաղափարները գոտեմարտի էին ոգեշնչում Կարմիր Բանակի մարտիկներին։ Ռազմաճակատի որ հատվածում վտանգն ավելի սպառնալի էր՝ Լենինն այնտեղ էր ուղարկում Ի. Վ. Ստալինին ու իր մյուս զինակիցներին։ Պարտիայի կոչով այնտեղ էին մեկնում հազարավոր կոմունիստներ և ապահովում հաղթանակը թշնամու դեմ։

Սովետական Զինված Ուժերը ետ մղեցին ամերիկա-անգլիական իմպերիալիստների կողմից ոգեշնչված բոլոր արշավանքները մեր երկրի դեմ ու ջախջախեցին սպիտակ գվարդիականների խռովությունները, որոնց նպատակն էր կործանել երիտասարդ

Սովետական Ռեսպուբլիկան, աշխարհի առաջին բանվորա-գյուղացիական պետությունը։ Քաղաքացիական պատերազմն ավարտվեց Սովետական Զինված Ուժերի հաղթանակով, որն ապահովեց մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը։

Օտարերկրյա ինտերվենցիաները ջախջախելուց և քաղաքացիական պատերազմը հաղթականորեն ավարտելուց հետո Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ խաղաղ ստեղծագործ աշխատանքի, սոցիալիզմի կառուցման գործին։

Երկրի բոլոր ջանքերն ուղղելով ժողովրդական տնտեսության զարգացման, առաջին հերթին ծանր ինդուստրիայի աճին, պարտիան ու Սովետական կառավարությունը միաժամանակ մշտական հոգատարություն էին հանդես բերում մեր Հայրենիքի զինված ուժերի հզորությունն ամրապնդելու համար, նրան զինում էին առաջնակարգ մարտական տեխնիկայով և սիրով աճեցնում ռազմական կադրեր։

Այն ժամանակ, երբ սովետական ժողովուրդը զբաղված էր խաղաղ ստեղծագործական աշխատանքով, իմպերիալիստական ավազակները բազմիցս փորձեր կատարեցին



ներխուժելու մեր պետական սահմանները։ Սակայն ամեն անգամ հանդիպելով Սովետական Զինված Ուժերի ջախջախիչ հարվածներին, նրանք մատնվել են պարտության։



Ստրկացնելով Եվրոպայի ժողովուրդներին և եվրոպական երկրների էկոնոմիկան օգտագործելով պատերազմի շահերի համար հիտլերյան Գերմանիան 1941 թվականի հունիսի 22-ին ուխտադրժորեն հարձակվեց Սովետական Միության վրա, միանգամից մարտի մեջ մտցնելով 170 դիվիզիա։

Մեր Հայրենիքի վրա հարձակվելու պահին ֆաշիստական Գերմանիան ուներ լիովին մոբիլիզացրած բանակ, որն արդեն ժամանակակից պատերազմ մղելու երկամյա փորձ էր ձեռք բերել։

Մեր Հայրենիքի վրա կախված մահացու վտանգի այդ օրերին Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ոտքի ելավ սրբազան Հայրենական պատերազմի, կրծքով պաշտպանելու Մեծ Հոկտեմբերի նվաճումները, բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի քրտինքով ստեղծված հարստությունը։

Հայրենական Մեծ պատերազմը սկսվեց Սովետական Բանակի ու Նավատորմի համար անշահավետ պայմաններում, որի հետևանքով էլ պատերազմի սկզբնական շրջանում թշնամու գերակշռող ուժերի գրոհների ներքո մեր բանակը ստիպված եղավ նահանջի ծանր մարտեր մղել։

Չնայած նրան, որ պատերազմի սկզբին նենգ թշնամու ուժերը գերակշռող էին, մանավանդ տանկերի ու ինքնաթիռների քանակով, բայց սովետական ռազմիկները հերոսաբար մարտնչում էին օտարերկրյա զավթիչների դեմ և արիաբար պաշտպանում հայրենի սրբազան հողը։

Մոսկվայի տակ 1941 թվականի վերջերին հիտլերյան հորդաների դեմ մղված մարտերում Սովետական Բանակի ձեռք բերած հաջողությունները բեկում նախապատրաստեցին պատերազմում։ Այդ մարտական գործողություններից հետո առավել աչքի ընկավ ստալինգրադյան ճակատամարտը, որի ընթացքում ջախջախվեց ֆաշիստական 330 հազարանոց բանակը։ Ստալինգրադյան ճակատամարտում Սովետական Բանակի ձեռք բերած հաղթանակը վճռական բեկում ստեղծեց երկրորդ համաշխարհային պատերազմում։





Օրյոլի, Կուրսկի, Բելգորոդի շրջաններում մղված ահեղ կռիվներում մեր բանակի ձեռք բերած հաղթանակից հետո Սովետական Զինված Ուժերը մինչև պատերազմի վերջը նախաձեռնությունը ամուր պահեցին իրենց ձեռքը։

1944 թվականին Սովետական Զինված Ուժերի կողմից հակառակորդին հասցրած 10 ուժգին հարվածների հետևանքով մեր հայրենի հողից լիովին դուրս վռնդվեցին թշնամու զորքերը։

1945 թվականին Սովետական Զինված Ուժերի եզրափակիչ հաջող գործողությունների հետևանքով հիտլերյան բանակների դիմադրությունը վերջնականապես կոտրվեց և ֆաշիստական Գերմանիան անվերապահորեն կապիտուլացվեց։

Գերմանական զավթիչների դեմ հաղթանակ տանելուց հետո Սովետական Միության Զինված Ուժերը ջախջախիչ հարված հասցրեցին իմպերիալիստական Ճապոնիայի կվանտունյան բանակին և ապահովեցին մեր Հայրենիքի անվտանգությունը Արևելքում։

Սոցիալիստական Հայրենիքի ազատության ու անկախության համար մղված կատաղի պատերազմի չորս տարիների ըն-

թացքում սովետական ժողովուրդը, հարա-
զատ Կոմունիստական պարտիայի ղեկա-
վարությամբ չերևրաց մեծագույն փորձու-
թյունների հանդեպ, ցուցաբերեց երկաթյա
կամք, իր ուսերին տարավ պատերազմի ամ-
բողջ ծանրությունը և այն հասցրեց հաղ-
թական վախճանի։

Ֆաշիստական Գերմանիայի և իմպերիա-
լիստական Յապոնիայի դեմ Սովետական
Միության և նրա Զինված Ուժերի տարած
հաղթանակը մեկ անգամ ևս ամբողջ աշ-
խարհին ապացուցեց սոցիալիստական սիս-
տեմի գերազանցությունը կապիտալիստա-
կանի հանդեպ։

Ռազմական տեսակետից այդ հաղթա-
նակը համոզիչ կերպով ցույց տվեց մեր
Զինված Ուժերի, անձնակազմի մարտա-
կան հատկությունների, սպառազինության,
մեր ստրատեգիայի ու տակտիկայի գերա-
զանցությունը հիտլերյան Գերմանիայի
ու միլիտարիստական Յապոնիայի բանակ-
ների նկատմամբ, որոնք այն ժամանակ ա-
ռավել ուժեղ կապիտալիստական բանակ-
ներ էին։

Սովետական Զինված Ուժերի հաղթանա-
կը Հայրենական Մեծ պատերազմում ան-
թառամ փառքով պսակեցին իրենց մար-



տական դրոշները։ Այդ հաղթանակի շնոր-
հիվ ժողովուրդների ազատության ու խա-
ղաղության մեծ դրոշը այժմ ծածանվում է
Եվրոպայի ու Ասիայի մի հսկայական տա-
րածության վրա։

Կոմունիստական պարտիան ու Սովետա-
կան կառավարությունը մեր երկրի ամբողջ
ջանքերը ուղղելով վեցերորդ հնգամյա
պլանի կենսագործմանը, միաժամանակ մե-
ծագույն հոգատարություն են ցուցաբերում
Սովետական Միության Զինված Ուժերի
ամրապնդման նկատմամբ՝ ապահովելով
մեր Հայրենիքի ակտիվ պաշտպանությունը։

Մեր Հայրենիքի անվտանգության և բո-
լոր ժողովուրդների խաղաղ համագործակ-
ցության շահերը պահանջում են մշտական
զգոնություն, չթուլացող հոգատարություն
Սովետական պետության և նրա պաշտպա-
նության հետագա ամրապնդման նկատ-
մամբ։ Սովետական ժողովուրդը կարող է
վստահ լինել, որ մեր Զինված Ուժերի անձ-
նակազմը այսուհետև ևս հաստատակամո-
րեն կբարձրացնի իր մարտունակությունը,
կտիրապետի մարտական նորագույն տեխ-
նիկային և հուսալի կերպով կպաշտպանի
մեր Սոցիալիստական Հայրենիքի շահերը,
սովետական մարդկանց խաղաղ ստեղծա-
գործ աշխատանքը։

---

# ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

**Շահումյանի շրջանի Լենինի անվան Մետաքսագործվածքային ֆաբրիկայի գործող № 1 ցեխի ագիտատոր Լ. Կարապետյանի զրույցը ջուլհակների հետ:**

*Ջուլհակները ամեն անգամ մեծ ուշադրությամբ են լսում իրենց ագիտատոր Լ. Կարապետյանի պատմածները: Այդ հանգամանքը ամենից առաջ բացատրվում է նրանով, որ ագիտատորի զրույցները միշտ էլ նվիրված են եղել այնպիսի կարևոր հարցերի, որոնք շարժել են ունկնդիրների հետաքրքրությունը:*

*Կենդանի, գրավիչ ու համոզող է ագիտատոր Կարապետյանի խոսքը: Ամեն անգամ ագիտացիոն զրույցի հավաքվելով, բանվորները գիտեն, որ նրանից ոչ միայն լսելու են վերջին իրադարձություններին վերաբերվող հաղորդումներ, այլև մի նոր*



*բան են սովորելու իրենց աշխատանքը բարելավելու ուղղությամբ:*

*Հարուստ ու բովանդակալից է ագիտատորի կողմից անցկացվող զրույցների թեմատիկան: Ոչ միայն ցեխի, այլև արտադրության յուրաքանչյուր աշխատողի աշխատանքային հաջողությունների մասին նա միշտ էլ իր ձեռքի տակ ունի թարմ տվյալներ ու փաստեր:*

*Ագիտատոր Կարապետյանը հաճախակի ունկնդիրների հետ զրույցներ է ունենում ստանձնած պարտավորությունները կատարելու մասին: Օրինակ, օրերս նա ունկնդիրների հետ զրույց ունեցավ պարտիայի XX համագումարը արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու մասին: Զրույցի հենց սկզբից նա ունկնդիրներին մանրամասնորեն պատմում է թե ով, ինչպես է կատարում իր ստանձնած պարտավորությունները:*

*Մտնելով պարտիայի XX համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ,— ասում է ագիտատորը,— այժմ մեր ջուլհակներն ավելի շատ և բարձր որակի արտադրանք են տալիս: Իր ասածը համոզիչ դարձնելու նպատակով նա բերում է ենթավարպետներ Խ. Տուրգությանի և*

Հ. Շահինյանի օրինակը։ Մանրամասն կանգ առնելով նրանց կողմից արտադրական հաջողությունների հասնելու «գաղտնիքները» բացահայտելու վրա, նա միաժամանակ նշում է, որ այդ ընկերները բացի երկրին շատ արտադրանք տալուց, կատարել են նաև հումքի և նյութեղենի կոմպլեքսային խնայողություն, ապահովել են մեքենաների անխափան աշխատանքը և բարձրացրել են արտադրանքի որակը։

Հենց շնորհիվ արտադրական այդ հաջողությունների, բացատրում է ագիտատորը,— նրանք արժանացան ՍՍՌՄ Տեքստիլ արդյունաբերության մինիստրության և Տեքստիլ արդյունաբերության աշխատողների պրոֆմիության Կենտրոնական Խորհրդի կողմից սահմանված մրցանակին ու պատվոգրերին։

Ֆաբրիկայի, ցեխի և մրցության առաջավորների կողմից ձեռք բերված հաջողությունները նշելուց հետո, ագիտատորը չի խուսափում նաև թերությունների մասին խոսելուց։ Ընդհակառակը, ելնելով աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու իրենց ռեալ հնարավորություններից, ունկնդիրների առաջ ամենայն սրությամբ նա դնում է այդ թերություններն



ու տեղ գտած բացերը կարճ ժամանակում վերացնելու անհրաժեշտությունը։ Նա այն կարծիքն է հայտնում, որ իրենց մոտ դեռևս բոլոր դազգահների վրա աշխատող բանվորները չեն, որ հասել են բարձր արտադրողականության և արել են այն ամենը, ինչ հնարավոր էր։ Ագիտատորն իր ասածը հաստատելու համար բերում է երկու օրինակ.

Մոսկվայի «Կրասնայա ռոզա» ֆաբրիկայում գործող «ՋԳՍՊ—50» տիպի գործվածքային յուրաքանչյուր մեքենայի միջին արտադրողականությունը,— ասում է ագիտատորը,— երկու անգամ գերազանցում է մեր ֆաբրիկայում եղած նույն տիպի մեքենաների միջին արտադրողականությունից։ Ուրեմն ինչո՞ւմն է բանը։ Ինչո՞ւ մի դեպքում հնարավոր է բարձր արտադրողականության հասնել, իսկ մյուս դեպքում՝ ոչ։ Նշանակում է, որ դեռևս մեր ֆաբրիկայում ամեն ինչ չի արված տեխնիկային տիրապետելու, մեքենաների կարողությունը լրիվ օգտագործելու համար։ Այդ կենդանի օրինակից հետո ագիտատորը կոնկրետ փաստերով ցույց է տալիս, որ իրենց մոտ կան բոլոր հնարավորությունները Մոսկվայի այդ առաջավոր ձեռնարկությանը հասնելու հա-

մար։ Օրինակ, ֆաբրիկայում նույն տիպի մեքենայի վրա աշխատող շատ ջուլհակուհիներ ոչ միայն հասել են «Կրասնայա ռոզա» ֆաբրիկայի առաջավոր մարդկանց, այլև որոշ դեպքերում գերազանցել են նրանց։ Ջուլհակուհի Ա. Ղազարյանը յուրաքանչյուր ժամում պլանով նախատեսված 2 մետր գործվածքի փոխարեն թողարկում է 4,1 մետր արտադրանք։ Սակայն բանն այն է, որ ֆաբրիկայում ոչ բոլորն են աշխատում Ղազարյանի ու մյուս առաջավորների օրինակով։ Վերցնենք մեկ այլ օրինակ։ Ընդամենը երկու ամիս առաջ ընկ. Մ. Մինասյանի ղեկավարած բրիգադան նվաճեց միջբրիգադային փոխանցիկ դրոշը։ Բայց այդ բրիգադայի ընկերները երկար ժամանակ չկարողացան այն իրենց ձեռքում պահել և այժմ փոխանցիկ դրոշը գտնվում է Պ. Կլեչյանի բրիգադայում։ Ինչո՞ւ այսպես ստացվեց,— հարց է տալիս ագիտատորը։ Ունկնդիրները ճիշտ կերպով պատասխանում են, որ այդ եղավ այն պատճառով, որ Մինասյանի բրիգադայի աշխատողները հասնելով որոշ հաջողությունների, հանգստացան ձեռք բերածով և թերագնահատեցին իրենց մրցակիցների ուժերը։



Ընդհակառակը, նրանց մրցակիցներն աշխատեցին ամբողջ ուժերի լարմամբ և հաղթող դուրս եկան։

Ահա թե ինչպիսին է մրցության ուժը։ Եթե մրցում ես հաղթելու համար, ապա դրան հասնելու ճանապարհին պետք է կատարես քեզանից կախված ամեն ինչ,— եզրափակում է ագիտատորը։

Ցեխում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը խանգարող պատճառներից մեկն էլ ագիտատորը համարում է աշխատանքային անհրաժեշտ կարգապահության բացակայությունը։ Նա նշում է, որ դեպքեր են լինում, երբ բանվորների ոչ հարգելի բացակայությունների պատճառով մեքենաները մնում են անօգտագործելի, երբեմն հումքը ժամանակին չի մատակարարվում և երբեմն էլ խախտվում կամ ձգձգվում են մեքենաները մասնակի ու հիմնական վերանորոգումից հետո շահագործման հանձնելու ժամկետները։ 1955 թվականի իր արտադրական պլանները ցեխը լիովին կատարեց։ Սակայն որոշ բանվորներ թերակատարեցին իրենց արտադրական նորմաները։ Ունկնդիրների ուշադրությունը սևեռելով այդ հարցի վրա, ագիտատորը միաժամանակ կոնկրետ օրինակներով պարզաբանում է, թե

ինչ պետք է անել, որպեսզի ընկերական օգնության միջոցով հետ մնացողներին հասցնել առաջավորներին։ Այնուհետև ագիտատորը նշում է, որ ջուլհակներն ու ջուլհակուհիները ունեն լայն հնարավորություններ ոչ միայն պլանները կատարելու, այլև երկրին մեծ քանակությամբ և բարձր որակի արտապլանային արտադրանք տալու համար։

Խոսելով դեռևս աշխատանքի անհրաժեշտ փորձ չունեցող երիտասարդ բանվոր-բանվորուհիների տեխնիկական պատրաստականությունը բարձրացնելու մասին, ագիտատորը խորհուրդ տվեց նրանց ուսումնասիրել առաջավորների աշխատանքի փորձը և այն արմատավորել իրենց մոտ։

Զրույցից հետո ստանձնած պարտավորությունները գերազանց ցուցանիշներով կատարելու մասին մտքերի աշխույժ փոխանակություն սկսվեց ունկնդիրների միջև։ Նրանք բազմաթիվ և կոնկրետ օրինակներով պարզաբանեցին այն անսպառ հնարավորությունները, որ կան ֆաբրիկայում երկրին ավելի շատ և ավելի բարձր որակի արտադրանք տալու համար։

---

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀՍԿԱՅԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՑՈՂ ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

### Ի. ՖԻԼԻՊՈՎ

Վերջին ժամանակներս աշխարհում ոչ մի այլ իրադարձություն այնքան խոր հետաքրքրություն առաջ չէր բերել, իր վրա բևեռելով մեր երկրի սահմաններից դուրս գտնվող հասարակության սևեռուն ուշադրությունը, ինչպես ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվների նախագծի հրապարակումը։

Բոլոր երկրներում ամենաբազմազան քաղաքական ուղղության պատկանող մամուլը մանրամասն հաղորդումներ հրապարակեց սովետական նոր հնգամյակի հիմնական խնդիրների և ցուցանիշների մասին։ Թերթերը և ամսագրերը տպագրում են բազմաթիվ հոդվածներ, տեսություններ և մեկնաբանություններ, որոնց մեջ քննարկվում են վեցե-

ռորդ հնգամյակի դերը Սովետական Միության տնտեսական զարգացման գործում և նրա ազդեցությունը միջազգային դրության վրա։

Այն չթուլացող հետաքրքրությունը, որ ցուցաբերում են բոլոր երկրների հասարակական լայն շրջանները սովետական նոր հնգամյակի նկատմամբ, վառ կերպով վկայում է, թե որքան վիթխարի է նրա միջազգային նշանակությունը։

Սովետական պետության էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման մոտակա հնգամյակի հոյակապ ծրագիրը, որ նշված է ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների նախագծում, խորին գոհունակություն և անկեղծ ուրախություն առաջ բերեց ամբողջ աշխարհի աշխատավորների մեջ։ Երկրագնդի բոլոր անկյուններում աշխատավոր մարդիկ վեցերորդ հնգամյակը իրավամբ գնահատում են, որպես Սովետական Միության մի նոր հսկայական ավանդ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի գործում։

ՍՍՌՄ վեցերորդ հնգամյա պլանի լուրը առանձնապես ջերմ ընդունելություն գտավ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Լեհաստանի, Ռումինիայի, Հունգարիայի,



Չեխոսլովակիայի և սոցիալիստական լագերի մյուս երկրների թերթերը ամեն օր տպագրում են հոդվածներ, թղթակցություններ, նամակներ, բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի կարծիքներ, որոնց մեջ իրենց արտահայտությունն են գտնում աշխատավորների այն խոհերն ու զգացմունքները, որ առաջ է բերել սովետական նոր հնգամյակի հոյակապ պլանը։

«ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ Դիրեկտիվների նախագծի հրապարակումը,— գրել է «Ժենմինժիբաո» թերթը,— չին ժողովրդի համար հսկայական ոգևորության ուժի մի իրադարձություն է։ Մենք կգործադրենք մեր բոլոր ուժերը, որպեսզի սովետական մեծ ժողովրդի օրինակով մեր մեծ հայրենիքը խաղաղ աշխատանքով դարձնենք հզոր ինդուստրիալ-սոցիալիստական տերություն»։

«Կարդալով վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների նախագիծը՝ մարդ չի կարող չհիանալ,— ասել է չեխոսլովակյան անվանի մեքենավար Պ. Դանկոն։— Հսկայական են նրանում նշված խնդիրները։ Մենք գիտենք, որ սովետական մարդիկ կատարելով նոր

հնգամյակը՝ է՛լ ավելի կամրապնդեն իրենց մեծ Հայրենիքի տնտեսական ուժն ու հզորությունը, իսկ դրա հետ մեկտեղ՝ նաև ամբողջ սոցիալիստական լագերի հզորությունը։ Ահա թե ինչու մենք ջերմորեն ցանկանում ենք, որ սովետական ժողովուրդը հաջողությամբ կատարի այն հոյակապ խնդիրները, որ դրել է նրա առաջ Կոմունիստական պարտիան»։

Այդ կարծիքին են և այդ են ասում ժողովրդական դեմոկրատիայի երկրների միլիոնավոր աշխատավորները, որոնք ծանոթացել են սովետական վեցերորդ հնգամյակի նյութերին։

Առաջիկա հնգամյակում է՛լ ավելի կամրապնդվի ու կընդարձակվի Սովետական Միության և սոցիալիստական հզոր լագերի բոլոր երկրների քաղաքական, տնտեսական և կուլտուրական համագործակցությունը։

Սովետական Միությունը, ինչպես ասված է ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների նախագծում, ամեն կերպ կընդարձակի համագործակցությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ տնտեսական ռեսուրսները և արտադրողական կարողությունները ընդհանուր շահերի համար ավելի ռացիոնալ օգտագործելու ասպարեզում՝ ժո-



ղովրդական տնտեսության առանձին ճյուղերի զարգացումը կոորդինացնելու, արտադրությունը մասնագիտացնելու և կոոպերացնելու, ինչպես նաև գիտա-տեխնիկական նվաճումների և արտադրական առաջավոր փորձի փոխանակություն կատարելու միջոցով։

Այդ հեռանկարը ուրախացնում և ոգեշընչում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորներին, որոնք պայքարում են իրենց երկրների ժողովրդատնտեսական պլանների կատարման համար։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների մամուլը համոզմունք է հայտնում, որ առաջիկա հնգամյակում տնտեսական համագործակցության ամրապնդումը Սովետական Միության և այդ երկրների միջև՝ կարագացնի տնտեսական շինարարության տեմպերը սոցիալիստական լագերի երկրներում, ամենանպաստավոր պայմաններ կստեղծի նրանց ժողովրդական տնտեսության հետագա վերելքի համար, սոցիալիզմի ուղիով հաջող առաջընթացի համար։

1956 թվականը նոր հնգամյակի սկսման տարի է ոչ միայն Սովետական Միության, այլև Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Գեր-

մանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի համար։ Այդ հանգամանքը էլ ավելի է նըպաստում Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական համագործակցության զարգացմանը, սոցիալիստական լագերի բոլոր երկրների եղբայրական փոխադարձ օգնության ընդլայնմանը՝ իրենց ժողովրդա-տնտեսական հեռանկարային պլանների կատարման համար մղվող պայքարում։

Սովետական վեցերորդ հնգամյակի հոյակապ հեռանկարները հիացմունքի և սովետական ժողովրդի նկատմամբ հսկայական համակրանքի զգացմունք են առաջ բերում նաև կապիտալի երկրների աշխատավորների մեջ։

Սովետական հինգերորդ հնգամյակի հանրագումարները և ՍՍՌՄ վեցերորդ հնգամյա պլանի առաջադրանքները համեմատելով կապիտալիստական երկրների տնտեսական զարգացման տվյալների հետ, այդ երկրների ժողովրդական լայն մասսաները տեսնում են այն հսկայական ակնբախ առավելությունները, որ ունի սոցիալիստական հասարակարգը կապիտալիստականի հանդեպ։

Մեկնաբանելով Դիրեկտիվների նախագի-



ծը, Ֆրանսիայի կոմունիստական պարտիայի օրգան «Յումանիտե» թերթը գրել է.

«Ինչպիսի հակապատկեր հին, կապիտալիստական աշխարհի լճացման հանդեպ։ Այստեղ արտադրության զարգացումը նշանակում է տնտեսական ճգնաժամ, աղքատություն և գործազրկություն, մինչդեռ ՍՍՌՄ-ում այդ զարգացումն օգտագործվում է ամբողջ հասարակության բարեկեցությունն ու երջանկությունն ապահովելու համար»։

ՍՍՌՄ կոմունիստական շինարարության հաջողությունները, սովետական վեցերորդ հնգամյակում նշված տնտեսական և կուլտուրական շինարարության վիթխարի խնդիրները ակնբախորեն համոզում են կապիտալիստական երկրների բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին, որ սոցիալիզմի ուղին միակ ճիշտ ուղին է, որը տանում է դեպի ազատ ու երջանիկ կյանք։ Սովետական նոր հնգամյակը ամրապնդում է բոլոր երկրների աշխատավորների հավատն այն բանի նկատմամբ, որ իրենք հաղթանակ կտանեն խաղաղության և սոցիալիզմի համար մղվող պայքարում։

Եթե սովետական նոր հնգամյակի համբավը մեր երկրի սահմաններից դուրս գտնվող աշխատավորների սրտերը համակեց բերկ-

րանքի, ոգևորության և լավագույն ապագայի նկատմամբ հույսի զգացմունքով, ապա Սովետական Միության թշնամիներին նա խոր վհատություն և տագնապ պատճառեց։

Այս կապակցությամբ անհետաքրքիր չի լինի վերհիշել, որ բուրժուական տնտեսագետները և տեսաբանները անվստահությամբ և ծաղր ու ծանակով էին դիմավորում սովետական նախորդ, մանավանդ առաջին հնգամյակները, մեծամտորեն դրանք համարում էին ֆանտաստիկ պլաններ և կանխագուշակում դրանց «անխուսափելի կրախը»։ Կյանքը դաժանորեն ծաղրեց այդպիսի վայ-մարգարեներին։ Սովետական ժողովուրդը հաջողությամբ կատարեց իր ժողովրդական տնտեսության բոլոր հնգամյա պլանները, իսկ նրանք, ովքեր կանխագուշակում էին դրանց տապալումը, խայտառակվեցին։ Զարմանալի չէ, որ այժմ այլևս ոչ ոք սիրտ չի անում հանդես գալ այն պնդումով, թե սովետական տնտեսական պլանները անիրագործելի են։

Քննարկելով այժմ Դիրեկտիվների նախագիծը, բուրժուական մամուլը հարկադրված է խոստովանել սովետական նոր հնգամյակի միանգամայն իրական ու իրագործելի լինելը։



«Այժմ ոչ ոք այլևս փորձ չի անում երես դարձնելու այդ պլաններից և վերահսկիչ թվերից— դրանք նայիվ և ֆանտաստիկ պլաններ անվանելով,— գրել է անգլիական «Տրիբյուն» շաբաթաթերթը։— Արևմտյան բոլոր պատասխանատու մեկնաբանները չափազանց լուրջ վերաբերվեցին վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ հաղորդագրություններին»։

Վեցերորդ հնգամյակում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության առաջ դրված խնդիրների թափն ու խիզախությունն այնքան մեծ է, որ այդ բանը չի կարող անգամ չխոստովանել արևմտյան երկրների բուրժուական մամուլը։ Դանիական ֆինանսական շրջանների օրգան «Ֆինանստիդենդե» շաբաթաթերթը, որին դժվար է կասկածել թե համակրանք է տածում ՍՍՌՄ-ի նկատմամբ, անդրադառնալով վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ Դիրեկտիվների նախագծին, հայտարարել է. «Պլանի թվերը շատ բանով գերազանցում են այն, ինչ արտացոլվում է Սովետական Միության 1960 թվականի տնտեսական դիրքերի վերաբերյալ ամենախիզախ երազանքներում»։

Բուրժուական մամուլում առանձնապես աշխույժ արձագանքներ է առաջ բերել Դիրեկ-

տիվների նախագծի այն տեղը, ուր ասվում է, որ Սովետական երկիրն այժմ ունի բոլոր անհրաժեշտ պայմանները, որպեսզի պատմական կարճ ժամանակամիջոցում տնտեսական խաղաղ մրցության ճանապարհով լուծի ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը՝ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ հասնել և առաջ անցնել կապիտալիստական առավել զարգացած երկրներից։ Այս կապակցությամբ բազմաթիվ բուրժուական տեսաբաններ համեմատության մեջ են դնում գլխավոր կապիտալիստական երկրների և Սովետական Միության տնտեսական ղարգացման տեմպերը և առաջին հերթին ծանր արդյունաբերության զարգացման տեմպերը։ Այդ տվյալների վերլուծությունը չափազանց անմխիթար հետևությունների է հանգեցնում նրանց։

Ֆրանսիական «Մոնդ» թերթը Դիրեկտիվների նախագծին նվիրված խմբագրական հոդվածում գրել է. «Հարկավոր է ընդունել, որ ՍՍՌՄ արդյունաբերական զարգացման տեմպերը չափազանց պատկառելի են և որ նրանք ավելի բարձր են, քան արևմտյան կապիտալիստական երկրների տեմպերը»։

«Ռուսաստանը,— հայտարարում է անգ-



լիական «Էկոնոմիստ» ամսագիրը,— տնտեսական ամենալուրջ մարտահրավերն է նետում Արևմուտքին։ Նա հետամնաց երկրից ոչ միայն դարձել է Եվրոպայի արդյունաբերական գիգանտ, այլև սկսում է հասնել բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրության այն մակարդակին, որ ձեռք է բերել Եվրոպան»։

Ստիպված է նման հետևության հանգել նաև ամերիկյան «Նյու-Յորք թայմս» թերթը։ «Ռուսները,— գրում է այդ թերթը,— անկասկած մեծ հաջողություն ձեռք կբերեն մոտակա հինգ տարում, և տնտեսական տեսակետից կսկսեն հասնել մեզ»։

Հոլանդական «Տրոուվ» թերթի խոսքերով՝ «ռուսական նոր հնգամյակը լուրջ սպառնալիք է Արևմուտքի արդյունաբերական գերազանցությանը»։

Զանազան երկրների բուրժուական մամուլի արտահայտած այս և նման բազմաթիվ այլ կարծիքները վկայում են, որ կապիտալիստները տագնապի մեջ են Սովետական Միության աճող տնտեսական հզորությունից և երկյուղ են կրում կապիտալիզմի ու սոցիալիզմի տնտեսական խաղաղ մրցության հեռանկարի հանդեպ։

Սովետական նոր հնգամյակը տեխնիկա-

կան հզոր պրոգրեսի հնգամյակ է, սովետական էկոնոմիկայի բոլոր ճյուղերում նորագույն տեխնիկայի արմատավորման հընգամյակ։ Դիրեկտիվների նախագիծը նախատեսում է զգալիորեն ընդլայնել ատոմային էներգիայի կիրառումը խաղաղ նպատակներով, լայն մասշտաբներով միջոցառումներ իրագործել արդյունաբերության բոլոր ճյուղերում արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ՝ էլեկտրիֆիկացման, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման հետագա զարգացման, նորագույն բարձր արտադրողական սարքավորման և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, հնացած սարքավորման լայն փոխարինման և մոդեռնացման հիման վրա։

Սովետական Միության բարձր տեխնիկայի այդ կուրսը իր վրա է գրավում արևմուտքի բուրժուական մամուլի առանձնահատուկ ուշադրությունը։

Ֆրանսիական «Պարի-պրես-ենտրանսիժան» թերթը անհանգստությամբ նշում է, որ Սովետական Միությունը «վիթխարի պրոգրես է ձեռք բերել ատոմային էներգիայի օգտագործման ասպարեզում», ավելացնելով, որ «հատկապես մեծ տպավորություն են



գործում սովետական ժողովրդի նվաճումները երկրի էլեկտրիֆիկացման ասպարեզում...»։

Արևմտագերմանական «Ֆրանկֆուրտեր ռունդ-շաու» խոշոր թերթը անդրադառնալով ՍՍՌՄ տեխնիկական պրոգրեսի հարցերին առաջիկա հնգամյակում, հայտարարել է. «Որոշ չափով Սովետները թռիչք են կատարում մեխանիկայի ու էլեկտրականության դարի վրայով և մտնում ատոմի ու լիովին ավտոմատացված ձեռնարկությունների դարը»։

«Ռուսները,— տրտնջում է անգլիական «Տրիբյուն» շաբաթաթերթը,— ավելի շատ ուշադրություն են դարձնում ավտոմատացմանը, քան մենք՝ Արևմուտքում։ Նրանք բարձրացնում են իրենց տեխնիկական մակարդակը, հիմնական ուշադրությունը դարձնելով ամենագլխավորին՝ տեխնիկական կրթությանը, որի ասպարեզում նրանք շատ առաջ են անցել արևմտյան ամեն մի երկրից»։

Բուրժուական մամուլի արտահայտած մտքերը տոգորված են այն տագնապով, որ վեցերորդ հնգամյակը նոր հնարավորություններ է ստեղծելու մյուս երկրների, հատկապես, այսպես կոչված տնտեսապես թույլ զարգացած երկրների հետ Սովետա-

կան Միության տնտեսական համագործակցության համար։

«Մեքենաների արտադրության աճմանը և ինժեներների թվի ավելացմանը զուգընթաց,— ազդանշում է «Նյու-Յորք թայմս» թերթը,— Սովետական Միությունը ավելի ու ավելի շատ ռեսուրսներ ձեռք կբերի արտասահմանում օգտագործելու համար»։

Արևմտագերմանական «Դի վելտ» թերթը անհանգստություն է արտահայտում այն առթիվ, որ Դիրեկտիվների նախագիծը կարող է ուժեղ տպավորություն գործել Մերձավոր Արևելքի և Ասիայի ժողովուրդների վրա։ «Արևմուտքը,— գրում է թերթը,— պետք է լրջորեն խորհի թույլ զարգացած երկրների տնտեսական զարգացման գործում իր ունենալիք ավանդի մասին։ Խրուշչևի և Բուլգանինի ուղևորությունը Ասիա և վեցերորդ հընգամյա պլանի Դիրեկտիվների նախագծի հրապարակումը՝ մի մրցահրավեր են Արևմուտքի ասիական քաղաքականության նըկատմամբ»։

Ամերիկյան հայտնի տեսաբան Ուոլտեր Լիպմանը մատնանշում է թույլ զարգացած երկրների միջազգային դրության մեջ տեղի ունեցած լուրջ փոփոխությունը։ «Անցավ այն



ժամանակը,—գրում է Լիպմանը «Նյու-Յորք գերալդ տրիբյուն» թերթում,— երբ արևմըտյան տերությունները էին միակ երկրները, որ արդյունաբերական արտադրանք էին մատակարարում թույլ զարգացած երկրներին»։ Այժմ դրան մասնակցում է Սովետական Միությունը, և թույլ զարգացած երկրները «չեն ցանկանում նրան դուրս հանել իրենց տնտեսական կապերի օրբիտից»։

Գաղութարարների շահերը պաշտպանող արևմտյան բուրժուական մամուլի այս բոլոր երկյուղները իրական հիմք ունեն։

Սովետական վեցերորդ հնգամյակը ամենախոշոր հետաքրքրություն է առաջ բերել Արևելքի երկրներում։ Հնդկաստանի, Բիրմայի, Ավղանստանի և անկախ գոյության ուղին թևակոխած մյուս երկրների ժողովուրդները ձգտում են ստեղծել իրենց ազգային արդյունաբերությունը։ Նրանք ուշադիր կերպով ուսումնասիրում են Սովետական Միության տնտեսական զարգացման փորձը։ Վեցերորդ հնգամյակի պլանում այդ երկրները նմանապես նոր հնարավորություններ են տեսնում իրենց տնտեսական զարգացման գործում ՍՍՌՄ-ից լուրջ օգնություն ստանալու համար։ Նրանք գիտեն, որ ի տարբերություն ԱՄՆ-ի և կապիտալիստական մյուս երկրնե-

րի ստրկական «օգնության», սովետական տնտեսական օգնությունը՝ դա իսկական անշահախնդիր օգնություն է, իսկական գործարար համագործակցություն, որի հիմքը կազմում է հավասարությունը և փոխադարձ շահավետությունը։

ԱՄՆ-ի, Անգլիայի և արևմտյան մյուս երկրների ռեակցիոն մամուլի օրգանները հաշվի առնելով այն հսկայական ազդեցությունը, որ թողնում է սովետական նոր հնգամյակը կապիտալիստական երկրների աշխատավորների մտքերի վրա, ճգնում են խեղաթյուրել նրա նպատակներն ու խնդիրները։ Ընդ որում դրա համար նրանք չեն խորշում ոչ մի բանից՝ զրպարտությունից, նենգափոխությունից և բացարձակ կեղծիքից։ Մասնավորապես, որոշ տեսաբաններ փորձում են ՍՍՌՄ վեցերորդ հնգամյա պլանը պատկերացնել որպես ինչ որ սպառազինությունների մրցավազքի պլան, նպատակ ունենալով դյուրահավատ մարդկանց նորից ու նորից վախեցնել կարծեցյալ «սովետական սպառնալիքով»։ Այս և դրանց նման ցնորամիտ հերյուրանքները, որ տարածում է բուրժուական մամուլը, նպատակ ունեն ոչ միայն սեր տարածել սովետական հնգամյակի հասցեին, այլև դրա հետ միասին բացահայտ փորձեր անել արդարացնելու սպառազինությունների այն մրցավազքը, որ այսօր էլ շարունակվում է Արևմուտքում։ Սակայն դժվար թե դրանք կարողանան որևէ մեկին մոլորության մեջ գցել։



Ծանոթանալով Դիրեկտիվների նախագծին՝ բոլոր երկրների բարի կամքի մարդիկ համոզված են, որ սովետական նոր հնգամյակը խաղաղ կոմունիստական շինարարության վիթխարի ծրագիր է, խաղաղ պայմաններում ստեղծագործելու ծրագիր։ Այդ մասին է խոսում վեցերորդ հնգամյա պլանի Դիրեկտիվների նախագծի յուրաքանչյուր տողը, նրա յուրաքանչյուր թիվը։

Վեցերորդ հնգամյա պլանում հետևողականորեն արտահայտված է Սովետական Միության արտաքին խաղաղասիրական քաղաքականությունը, որը խարսխված է տարբեր սոցիալ-քաղաքական սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի վրա։ Դրանումն է կայանում սովետական նոր հնգամյակի հսկայական ձգողական ուժը, բոլոր երկրների ժողովուրդների մտքերի վրա նրա ունեցած հսկայական ներգործության պատճառը։

---

# ԴԵՂԻՆ ՊՐՈՖՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Կիրովականից ընթերցող ընկ. Մ. Սահակյանը խնդրել է տպագրել հոդված դեղին պրոֆմիությունների մասին: Պատասխանում ենք ընկ. Սահակյանի հարցին:

*Կապիտալիստական երկրներում պրոլետարական պրոֆեսիոնալ միություններից բացի, գոյություն ունեն նաև այնպիսի պրոֆմիություններ, որոնց ղեկավարությունը գտնվում է բուրժուազիայի գործակալ ռեակցիոն տարրերի ձեռքում։ Վերջիններս իրենց ղեկավարությունը պրոֆմիություններում իրականացնում են բանվոր դասակարգի և ձեռնարկությունների միջև համագործակցություն հաստատելու դիրքերից։ Այդ ռեակցիոն տարրերի ղեկավարության տակ գտնվող պրոֆմիությունները ձախողում են բանվոր դասակարգի դասակարգային պայքարը և նպատակ ունեն պառակտել պրոֆմիութենական միասնությունը՝ ազգային և միջազգային մասշտաբով։ Նմանօրինակ պրոֆմիություններին ընդունված է կոչել «դեղին պրոֆմիություններ»։*



*Այդպիսի պրոֆմիություններ առաջին անգամ ստեղծվել են Ֆրանսիայում 1887 թվականին։ Ըստ որոշ ենթադրությունների «դեղին» մականունը ծագել է այն բանից, որ Մոնսո-լյո-Մին բնակավայրում (Ֆրանսիա) բանվորների գործադուլը ձախողելու համար ձեռնարկատերերը ստեղծել էին միություն, որի անդամները ժողովի էին հավաքվել մի շենքում, որի դեղին թղթով ծածկված լուսամուտները ջարդվեցին գործադուլավորների կողմից։*

*Սկզբնական շրջանում «դեղին» էին կոչվում այն պրոֆմիութենական կազմակերպությունները, որոնք ստեղծվում էին ձեռնարկատերերի կամ պետական օրգանների կողմից՝ պրոլետարական պրոֆմիություններին հակադրելու նպատակով։*

*Հետագա՝ իմպերիալիզմի շրջանում դեղին էին կոչվում այն բոլոր ռեֆորմիստական պրոֆմիությունները, որոնց ղեկավարությունը վարում էր բանվոր դասակարգի շահերը բուրժուազիայի շահերին ենթարկելու քաղաքականություն։*

*Այդ կարգի տիպիկ պրոֆկազմակերպություններից են անգլիական տրեդյունիոնները (արհեստակցական միություն), Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիան, Արտա-*

դրական պրոֆմիությունների կոնգրեսը (ԱՄՆ) և այլն։

Այս դեղին պրոֆմիությունների վաճառված ղեկավարության միջոցով մոնոպոլիստները և նրանց կամակատար բուրժուական ռեակցիոն կառավարությունները դիմում են բոլոր միջոցներին, որպեսզի անդամալույծ անեն բանվոր դասակարգի սոցիալ-տնտեսական շահերի պաշտպանության համար պայքարող պրոլետարական պրոֆմիությունները, ուժեղացնեն բանվոր դասակարգի անզուսպ շահագործումը և ապահովեն իրենց առասպելական շահույթները։

Դեղին պրոֆմիությունների լիդերները միաժամանակ ամեն ջանք գործադրում են, որպեսզի խախտեն պրոֆմիութենական համաշխարհային միասնությունը, որին բանվոր դասակարգը հասել է երկարամյա, հետևողական պայքարի միջոցով։ Այս ասպարեզում տրեդյունիոնների բրիտանական կոնգրեսի գլխավոր խորհուրդը ետ չի մնում Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիայից։

Այն պահին, երբ բանվոր դասակարգը միջազգային մասշտաբով ծավալում էր իր պայքարը պատերազմի հրձիգների ագրեսիվ նախապատրաստությունների դեմ, 1948



թվականին բրիտանական տրեդյունիոնների գլխավոր խորհուրդն առաջարկում էր «ժամանակավորապես» դադարեցնել Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիայի (ՊՀՖ) գործունեությունը։ ՊՀՖ-ի գործադիր բյուրոն 1949 թվականի հունվարին հակահարված տվեց այդ պառակտչական առաջարկությանը, որի նպատակն էր հասնել ՊՀՖ-ի լուծարքին։ Հանդիպելով վճռական հակահարվածի և չկարողանալով այդ ձևով պառակտել միջազգային պրոլետարիատի միասնությունը, տրեդյունիոնների բրիտանական կոնգրեսի լիդերները, ինչպես նաև ԱՄՆ-ի արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի և Հոլանդիայի ռեֆորմիստական պրոֆկենտրոնի ռեակցիոն լիդերները հայտարարեցին, որ իրենք դուրս են գալիս Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիայից։ Դուրս գալով ՊՀՖ-ի կազմից, նրանք կազմեցին ՊՀՖ-ի դեմ ուղղված դեղին պրոֆմիություններ, այսպես կոչված՝ ազատ պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիա, որը համակրանք չի գտնում բանվոր դասակարգի շարքերում։ Դեղին պրոֆմիությունների ռեակցիոն ղեկավարությունը գործելով բուրժուազիայի շահերի օգտին, դեմ է դուրս գալիս կանանց ու տղամարդ-

կանց և երիտասարդների հավասար աշխատանքը հավասար վարձատրելու, գաղութային բանվորներին և մետրոպոլիայի բանվորներին հավասար վարձատրելու մասին բանվոր դասակարգի արդարացի պահանջների բավարարմանը։

Դեղին պրոֆմիությունների վաճառված ղեկավարները գործում են որպես մոնոպոլիստների գործակալներ՝ բանվորական շարժման մեջ և խափանում են բանվորների գործադուլները՝ այնտեղ, որտեղ նրանց այդ հաջողվում է։ Ավելին, դեղին պրոֆմիությունների ղեկավարությունը օժանդակում է բուրժուական պետության օրգաններին՝ հակաբանվորական օրենքներով մեծ չափերի հասնող տուգանքներ գանձել պրոֆմիություններից նրա համար, որ այդ պրոֆմիությունների մեջ մտնող բանվորները դիմել են գործադուլի իրենց կենսական պահանջների բավարարման և դեմոկրատական ազատությունների ու իրավունքների համար։

Վերջին տարիների ընթացքում այդ ձևով ԱՄՆ-ում տուգանել են լեռնագործների պրոֆմիությանը՝ 3.750 հազար դոլարով, Արևմտյան ափի բեռնակիրների պրոֆմիությանը՝ 750 հազար դոլարով, հյուսների և





ատաղձագործների պրոֆմիությանը՝ ավելի քան 2 միլիոն դոլարով։

Ռեակցիոն պրոֆմիությունների ղեկավարությունը պաշտպանում է ագրեսիվ ռազմական խմբավորումները, որոնք երկրների իմպերիալիստական շրջանների պատերազմական պատրաստությունները և դեմ է դուրս գալիս միջազգային լարվածության թուլացմանը։

ԱԳ. ԵՍԱՅԱՆ

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*«Պարտիական և սովետական մամուլի մասին»։— Փաստաթղթերի ժողովածու։ Գինը 13 ռ. 70 կ., 950 էջ, տիրաժ 3.000։*

*«Օգնություն քաղդպրոցների ունկնդիրներին»։— Ուսումնական ձեռնարկ։ Գինը 6ռ., 478 էջ, տիրաժ 15.000։*

Աշոտ Հովհաննիսյան— *«Նալբանդյանը և նրա ժամանակները»։ Գինը 23 ռ., 600 էջ, տիրաժ 5.000։*

Հակոբ Հակոբյան— *«Իմ աշխարհը»։ Գինը 90 կ., 40 էջ, տիրաժ 10.000։*

Ռ. Դրամբյան— *«Եղիշե Թադևոսյան»։ (Կյանքը և ստեղծագործությունը)։ Գինը 9 ռ., 210 էջ, տիրաժ 1.000։*

Գ. Ստեփանյան— *«Արփիար Արփիարյան»։ Գինը 4 ռ., 284 էջ, տիրաժ 3.000։*

---

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 4 1956 г.

*ՎՖ 01015 Պատվեր 143 Տիրաժ 8950*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*